Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:




# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ տապալեցին դաշնակների արյունոտ տիրապետությունը և հաստատեցին սովետական իշխանություն:

Անգլո-ամերիկյան իմպերիալիստների ու նրանց ստոր գործակալներ դաշնակների լծից հայ ժողովրդի ազատագրումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ձեռք բերած հերթական հաղթանակներից էր: Դրանով հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից և ազգային վերածնության հնարավորություն ստացավ, մտավ սովետական բազմազգ, եղբայրական ժողովուրդների մեծ ընտանիքի մեջ ու սկսեց իր նոր, երջանիկ կյանքի կերտումը:

Հայաստանի աշխատավորության այդ

պատմական հաղթանակը ջերմորեն ողջունեցին պարտիայի առաջնորդ մեծ Լենինը և նրա հավատարիմ աշակերտ ու զինակից Ի. Վ. Ստալինը։ Հայաստանի Ռևկոմի անունով ուղարկած իր հեռագրում Վ. Ի. Լենինը գրում էր. «Ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։ Ողջունելով սովետական կարգերի հաստատումը Հայաստանում, Ի. Վ. Ստալինը նույն թվականի դեկտեմբերի 4-ին «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» հոդվածում գրում էր. «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի ու դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը, բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը, այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր»։



Անցած 34 տարիների ընթացքում հայ ժողովուրդը սովետական մյուս ժողովուրդների մեծ ու հզոր ընտանիքում, պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ հասավ չտեսնված նվաճումների ու հաղթանակների։ Հետամնաց ու աղքատ երկրից Հայաստանը դարձավ բարձր



զարգացման հասած սոցիալիստական ռեսպուբլիկա, ուր բազմակողմանիորեն զարգանում ու ծաղկում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում բուռն թափով զարգացավ սոցիալիստական արդյունաբերությունը, հատկապես ծանր ինդուստրիան։ Ռեսպուբլիկայում կառուցվել են խոշոր մետալուրգիական, դազգահաշինական, քիմիական և այլ գործարաններ, վիթխարի էլեկտրակայաններ, հարյուրավոր սննդի ու լայն սպառման առարկաների գործարաններ ու ֆաբրիկաներ։ Միայն վերջին տարիների ընթացքում կառուցվեցին տասնյակ նոր խոշոր գործարաններ ու արդյունաբերական այլ ձեռնարկություններ։ Նոր կառուցված և արդեն շարք մտած գործարանների թվին են պատկանում՝ հիդրոտուրբինների, գեներատորների, տրանսֆորմատորների, կաբելի, մետաղահատ դազգահների, ալյումինի, կոմպրեսորների, էլեկտրաչափիչ գործիքների, ավտոմոբիլային ու տրակտորային պահեստի մասերի արտադրության, ժամացույցների, հրակայուն աղյուսի, մահուդի և այլ գործարանները, որոնց մասին, նույնիսկ երազել չէր կարելի նախասովետական Հայաստա-

նում։ Այժմ սովետական տարիներին ստեղծված արդյունաբերական ձեռնարկությունները մի քանի օրում տալիս են այնքան արտադրանք, որքան տվել էին Հայաստանի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները միասին վերցրած ամբողջ 1913 թվականին։

Տարեցտարի աճում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ 1951—53 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը աճեց 53 տոկոսով, որը 1940 թվականի մակարդակը գերազանցում է մոտ 3 անգամ։ Եթե 1953 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի աճը 1952 թվականի համեմատությամբ կազմում էր 18,5 տոկոս, ապա այս տարվա առաջին կիսամյակում անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճը կազմում է 19,4 տոկոս։ Մեծ չափերով ավելանում է նաև մեկ բանվորին ընկնող արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ Այսպես, օրինակ, եթե մեկ բանվորին հասանելիք արդյունաբերական արտադրանքը 1952 թվականին 1951 թվականի համեմատությամբ աճեց 6,2 տոկոսով, ապա 1953 թվականին 1952 թվականի համեմա-



տությամբ այն աճեց ավելի քան 7,7 տոկոսով։

Համեմատաբար արագորեն է աճում քիմիական արդյունաբերության, մեքենաշինական և մետալուրգիական ձեռնարկությունների, ինչպես նաև էլեկտրաէներգիայի ու ցեմենտի արտադրության ծավալը։

Սովետական Հայաստանը անցած 34 տարիների ընթացքում ստեղծել է բարձր զարգացած թեթև և սննդի արդյունաբերություն։ Միայն 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մետաքսե գործվածքների արտադրությունն ավելացավ մոտ 17 անգամ, կոշկեղենինը՝ 3 անգամ, մահճակալներինը՝ 7 անգամ, պահածոներինը՝ 2,5 անգամ և այլն։ Բացի այդ, առաջիկա երկու տարում յուրացվելու է 30 տեսակի լայն սպառման արդյունաբերական ապրանքների և 25 տեսակի պարենային ապրանքների արտադրություն։ Այդ ծրագրի կենսագործման նպատակով առաջիկա 2—3 տարում ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ներդրվելու է մոտ մեկ միլիարդ ռուբլի։ Ռեսպուբլիկայում 1953 թվականի համեմատությամբ 1954 թվականին բրդյա գործվածքեղենի արտադրությունը կաճի 165 տոկոսով, իսկ 1955 թվականին՝ 226 տոկոսով, կոշկե-

ղենինը՝ 1954 թվականին 40 տոկոսով, 1955 թվականին՝ 46 տոկոսով, ալյումինե ամանեղենի արտադրությունը՝ 1954 թվականին 1953 թվականի համեմատությամբ կաճի 5,2 անգամ, իսկ 1955 թվականին նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ 7,8 անգամ և այլն։

Ժողովրդական սպառման կարիքների համար ռեսպուբլիկայում կառուցվելու են 64 նոր ձեռնարկություններ՝ այդ թվում Երևանում՝ տեքստիլ-գալանտերիայի ֆաբրիկա, մսի կոմբինատ, կաթի գործարան, Կիրովականում՝ կարի ֆաբրիկա, կահույքի ֆաբրիկա, Սևանում՝ գորգերի կոմբինատ, ինչպես նաև ռեսպուբլիկայի տարբեր վայրերում՝ հանքային ջրերի գործարաններ, խոշոր ձեռնարկություններ՝ կերակրի աղի հանույթի և մշակման համար, հացի նոր գործարաններ և այլն։

Զարգացման բարձր տեմպեր ունի նաև մեր էլեկտրաարդյունաբերությունը։ Հայաստանում ցարիզմի ժամանակ միայն մի քանի մանր էլեկտրակայաններ կային, որոնք դաշնակցության օրոք համարյա իսպառ քայքայվեցին ու շարքից դուրս եկան։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանը պատվեց խոշոր, միջակ ու մանր էլեկտրա-



կայանների խիտ ցանցով։ Ռեսպուբլիկայում ներկայումս գործում են 112 էլեկտրակայան։

Նկատի ունենալով արդյունաբերության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման գործում էներգետիկայի կարևոր դերը, Հայաստանի Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը ձեռնարկել են նոր միջոցառումներ ռեսպուբլիկայի էներգետիկ բազայի ընդարձակման ու հզորացման ուղղությամբ։ Որոշված է արագացնել Սևան-Զանգու կասկադի նոր շինարարությունը, ինչպես նաև Այրումի հիդրոկայանի, Ստալինի անվան ջրանցքի վրա կառուցվող հիդրոկայանի և այլ կայանների շինարարության տեմպերը, ձեռնամուխ լինել Որոտան գետի էներգետիկ ռեսուրսները օգտագործելու պրոբլեմի լուծմանը։

Աճման ու զարգացման հիանալի ցուցանիշներ ունի նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Անընդհատ ավելանում է գյուղատնտեսության համախառն արտադրանքը, կոլտնտեսությունների և սովխոզների ցանքային տարածությունները, անասունների գլխաքանակը և մանավանդ ՄՏ կայանների տեխնիկական զինվածությունը։ Սկսած 1950 թվականից մինչև 1954 թվակա-

նը հացահատիկային կուլտուրաների ցանքային տարածությունները ամեն տարի 30 հազար հեկտարով ընդարձակվել են։ 1952 թվականին, 1913 թվականի համեմատությամբ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունն ավելացել է 2,2 անգամ, իսկ բամբակի բերքատվությունը՝ 2,4 անգամ։ Տարեցտարի աճել է կոլտնտեսությունների տնտեսական հզորությունը։ Այսպես, օրինակ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1953 թվականին, համեմատած նախապատերազմյան 1940 թվականի հետ, ավելացել են ավելի քան 2 անգամ, իսկ արտադրության հիմնական միջոցներն ու անբաժանելի ֆոնդերը՝ երեք ու կեսական անգամ։

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հունիսյան պլենումների պատմական որոշումները, այս տարի էլ՛ ավելի աճեցին կոլտնտեսությունների հանրային եկամուտները, անբաժանելի ֆոնդերը և արտադրության հիմնական միջոցները, ինչպես նաև կոլտնտեսականների եկամուտները ։ Ընթացիկ տարում գերակատարվել է հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը, անթերի են կատարվել բամբակենու և ճակնդեղի ցանքի



պլանները, 33 տոկոսով ավելի կարտոֆիլ, 23 տոկոսով ավելի բանջարեղեն և 8 տոկոսով ավելի կերակուլտուրաներ են ցանվել, քան անցյալ տարի։ Այս գյուղատնտեսական տարում խոշոր նվաճում է նաև այն, որ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները առաջին անգամ 3 հազար 325 հեկտար տարածության վրա կարտոֆիլի ու բանջարեղենի ցանքն ու տնկումը կատարեցին քառակուսի-բնային եղանակով։

Հայաստանում այժմ կա 754 կոլտնտեսություն, 39 սովխոզ, 58 մեքենա-տրակտորային կայան։ Կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտերում աշխատում են հազարավոր տրակտորներ, կոմբայններ ու բարդ գյուղատնտեսական մեքենաներ։ Կոլտնտեսությունների 95 տոկոսը արդեն սպասարկվում է ՄՏԿ-ների կողմից, որոնց տրակտորային պարկը 1953 թվականին ավելացավ 2,7 անգամ, իսկ կոմբայնների թիվը՝ 2,5 անգամ։ Հաճելի է իմանալ, որ մեքենա-տրակտորային կայանները արդեն կատարում են ավելի քան 90 տեսակի գյուղատնտեսական աշխատանքներ։ Գյուղատնտեսության հիմնական պրոցեսների մեքենայացման չափերով մեր ռեսպուբլիկան կանգնած է առաջին շարքերում և

զգալիորեն գերազանցում է կապիտալիստական մի շարք առաջավոր երկրների։ Այսպես, օրինակ, անցյալ տարի ցրտահերկի 87 տոկոսը, աշնանացանի 62 տոկոսը, հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի 49 տոկոսը, բամբակի ու ճակնդեղի ցանքի մշակման 100 տոկոսը կատարվել է մեքենաների միջոցով։

Ռեսպուբլիկայում անվիճելի հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնաբուծության ընդհանուր վերելքի՝ ինչպես անասունների գլխաքանակի աճման, այնպես էլ նրանց մթերատվության բարձրացման բնագավառում։ Արդեն 1952 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի գծով 1940 թվականի մակարդակը գերազանցվեց 30,7 տոկոսով, իսկ մանր եղջերավոր անասուններինը՝ 81,5 տոկոսով։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներից ելնելով, Հայաստանի Կոմունիստական պարտիայի 17-րդ համագումարում խնդիր դրվեց այս տարի ռեսպուբլիկայի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 5 տոկոսով, ընդ որում կոլտնտեսություններում կովերի գլխաքանակն ավելացնել 27,8 տոկոսով, ոչխարներինը՝ 10 տոկոսով, իսկ մոտակա տա-



րիների ընթացքում կոլտնտեսությունների ֆերմաներում կովերի գլխաքանակն ավելանալու է 40—50 տոկոսով։

Հայաստանի անասնաբույծների հաջողությունները ակնառու են։ Բոլոր կոլտնտեսություններն էլ ունեն 4—5 անասնաբուծական ֆերմաներ։ Այս տարի կազմակերպված Համամիութենական գյուղատնտեսական մշտական հոյակապ ցուցահանդեսում ներկայացվել են Հայաստանի շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ։ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի Հայկական ՍՍՌ-ի պավիլիոնում լայնորեն ներկայացված են Հայաստանի կոլտնտեսությունների ու սովխոզների հիանալի նվաճումները։ Ցուցահանդեսի ավելի քան 1140 թեկնածուների մեջ հաշվվում են մի քանի տասնյակ կոլտնտեսություններ, 12 գիտա-հետազոտական հաստատություններ, մեկ պատանի բնասերների խմբակ, մեկ սելեկցիոն կայան, հարյուրավոր բրիգադիրներ ու օղակավարներ, 36 ֆերմա, 4 ՄՏ կայան։

Ռեսպուբլիկայի 237 կոլտնտեսություններում ու սովխոզներում գյուղատնտեսական կարևորագույն զբաղմունքներից մեկը խաղողի մշակությունն է։ Արդեն անցած 34 տարիների ընթացքում խաղողի այգիների

տարածությունը ավելացել է չորս անգամ։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև պտղաբուծության ասպարեզում։ Այս տարի խաղողի այգիների տարածությունը կավելանա 1000 հեկտարով, պտղատու այգիներինը՝ 1500 հեկտարով, իսկ առաջիկա 2—3 տարիներում՝ ավելի քան 6000 հեկտարով, ընդ որում՝ Ալավերդու, Ազիզբեկովի, Շամշադինի և Իջևանի շրջանները վեր են ածվելու խաղողագործության նոր օջախների և ավելի մեծ տեղ են բռնելու նշի, ձիթենու, սերկևիլի, նռան և մերձարևադարձային մի շարք այլ կուլտուրաները։ Խնդիր է դրված այնքան ավելացնել խաղողի և մրգեղենի արտադրությունը, որպեսզի իսկական առատության հասնենք նաև այդ բնագավառում։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այս տարի կատարվել է 15 հազար հեկտար կարտոֆիլի, 8500 հեկտար բանջարանոցային կուլտուրաների և 1500 հեկտար բոստանային կուլտուրաների ցանք։

Ռեսպուբլիկայի աշխատավորները խոշոր աշխատանք են կատարել նաև խամ և խոպան հողերի յուրացման գործում։ Ջերմորեն արձագանքելով պարտիայի և կառավարության կոչին, մեր ռեսպուբլիկայի քաղաքներից և գյուղերից գյուղատնտեսության հար-



յուրավոր մասնագետներ, մեխանիզատորներ մեկնել են նոր յուրացվող հողերի շրջանները և այժմ հաջողությամբ մասնակցում են խամ և խոպան հողերի յուրացման համապետական, համաժողովրդական նշանակություն ունեցող գործին։

Ժողովրդական տնտեսության անընդհատ վերելքի հիման վրա տարեցտարի ավելի ու ավելի է բարձրանում ժողովրդի նյութական, կուլտուրական բարեկեցությունը։ 5-րդ հնգամյակի անցած 3 տարիներում ՍՍՌՄ ծանր արդյունաբերության արտադրանքն ավելացավ 46 տոկոսով, իսկ ժողովրդական սպառման ապրանքներինը՝ 45 տոկոսով։ Խոշոր չափով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, որի շնորհիվ 1940 թվականի համեմատությամբ երկրի ազգային եկամուտն ավելացավ ավելի քան երկու անգամ, որն է՛լ ավելի բարձրացրեց աշխատավորների նյութական-կուլտուրական բարեկեցությունը։

Բավական է ասել, որ միայն անցյալ տարի շարք մտան ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող 300 նոր ձեռնարկություններ, որի շնորհիվ տարվա երկրորդ կեսին երկրին տրվեց 30 միլիարդ ռուբլու շատ ապրանք, քան նույն տարվա առաջին

կեսում։ Այս տարի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը տեղի է ունենում նոր, ավելի լայն մասշտաբներով։ Ժողովրդի նյութական բարեկեցության նկատամամբ պարտիայի ու կառավարության հոգատարության ցայտուն արտահայտություններից մեկն էլ ապրանքների գների սիստեմատիկ իջեցումն է։ 1947 թվականից մինչև այսօր յոթ անգամ կատարվել է լայն սպառման ապրանքների մանրածախ գների իջեցում, որից բնակչությունն ստացել է միլիարդավոր ռուբլիների օգուտ, իսկ 5-րդ հնգամյակի 4 տարիների ընթացքում ապրանքների գներն իջել են ավելի քան 25 տոկոսով։

Ժողովրդի նյութական բարեկեցության բնագավառում ձեռք բերված այդ հաջողությունները ընդհանուր են եղբայրական բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Սովետական Հայաստանի համար։ Բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձի աճման և կոլտնտեսականների եկամուտների անընդհատ բարձրացման շնորհիվ, ռեսպուբլիկայում տարեցտարի ավելանում է պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ շրջանառությունը։ Այսպես, օրինակ, ռեսպուբլիկայում 1953 թվականին նախորդ



տարվա համեմատությամբ ապրանքաշրջանառությունը ավելացավ ավելի քան 20 տոկոսով։ Նախատեսված է 1954—56 թ. թ. բացել հասարակական սննդի 114 ձեռնարկություն և 547 նոր խանութ ու կրպակ և այդպիսով զգալիորեն ընդարձակել ռեսպուբլիկայի առևտրի ցանցը։

Աշխատավորության առողջության պահպանման և ապահովման նպատակով պարտիան ու կառավարությունը հսկայական միջոցներ են նախատեսում հիվանդանոցների, պոլիկլինիկաների, լաբորատորիաների, կուրորտների, հանգստյան տների, բժշկա-սանիտարական բազմաթիվ այլ հիմնարկների ու միավորների ցանցի ընդարձակման համար։ Տարեցտարի ավելանում են նաև սոցիալական ապահովության գծով տրվող կենսաթոշակները ու նպաստները (այդ վճարումները ռեսպուբլիկայում 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել են 3,7 անգամ)։ Մեր երկրում իրականացված է ձրի բուժօգնությունը։ Բազմազավակ մայրերն ստանում են պետական նպաստներ։ Անցյալ տարի առողջապահության համար բյուջետային հատկացումները գերազանցեցին 1940 թվականի մակարդակը մոտավորապես

3 անգամ, իսկ նախասովետական ժամանակաշրջանի համեմատությամբ, հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացավ ավելի քան 38 անգամ։

Ինչպես ամբողջ Սովետական Միության մեջ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում լայն ծավալ է ընդունել կոմունալ և անհատական բնակարանային շինարարությունը, որը աշխատավորության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման կարևոր պայմաններից մեկն է։ Վերջին երկու տարում բնակարանային շինարարության համար կատարված հատկացումները հասնում են 204 միլիոն ռուբլու, իսկ այս տարի բյուջեով նախատեսված է անցյալ տարվա համեմատությամբ 56,6 տոկոսով ավելի գումար։ Այս հնգամյակում ռեսպուբլիկայի քաղաքներում ու բանավաններում բնակարանային շինարարության համար նախատեսված է ներդնել 551 միլիոն ռուբլի գումար։ Նախատեսված է ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում ծավալել անհատական բնակարանային լայն շինարարություն։ Բնակարանային լայն շինարարություն է ծավալվել հատկապես Երևան, Լենինական, Կիրովական, Ալավերդի և այլ քաղաքներում։ Երև-



անը դարձել է ՍՍՌՄ-ի նշանավոր սոցիալիստական քաղաքներից մեկը։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական լուսավորության, կուլտուրայի, գիտության, արվեստի ու գրականության ասպարեզում։ Ռեսպուբլիկայի պետական բյուջեի 45 տոկոսը հատկացված է միմիայն ժողովրդական կրթության կարիքների համար։ 1953—54 ուս. տարում ռեսպուբլիկայում գործում էին 1148 հանրակրթական դպրոցներ, որոնցից 314-ը միջնակարգ, 656-ը յոթնամյա, 178-ը տարրական։ Ռեսպուբլիկայի բոլոր տեսակի դպրոցներում սովորում էին 315 հազար աշակերտներ, իսկ ուսուցիչների թիվը կազմում էր ավելի քան 16.000 հոգի։

Այս ուսումնական տարում բացվեցին մոտ 30 նոր հանրակրթական միջնակարգ դպրոցներ, է՛լ ավելի մեծացավ աշակերտների ու ուսուցիչների թիվը։

Ռեսպուբլիկայի երեք խոշոր քաղաքներում՝ Երևանում, Լենինականում և Կիրովականում արդեն 7-ամյա կրթությունից անցում է կատարված դեպի ընդհանուր 10-ամյա միջնակարգ կրթությունը։

Հայտնի է, որ նախառևոլյուցիոն Հայաստանում ոչ մի բարձրագույն դպրոց և գիտա-

հետազոտական հաստատություն չկար։ Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում ստեղծվեցին բազմաթիվ բուհեր ու գիտա-հետազոտական հիմնարկներ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 12 ըստացիոնար ԲՈՒՀ, որոնցում սովորում են ավելի քան 12.000 ուսանող, 5 հեռակա ինստիտուտ և 44 տեխնիկում։ Ռեսպուբլիկայի ԲՈՒՀ-երն ու տեխնիկումները ամեն տարի հազարավոր մասնագետներ են տալիս երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ու ժողովրդական լուսավորության, կուլտուրայի, գիտության, արվեստի ու գրականության բնագավառների համար։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունի գրքի հրատարակությունը։ Դեռ 1952 թվականին ավարտվեց Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուի 4-րդ հրատարակության 35 հատորների և Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուի 13 հատորների լույս ընծայումը։ Այս տարի լույս տեսավ Կ. Մարքսի «Կապիտալ»-ի առաջին հատորի նոր հրատարակությունը, շարունակվում է մարքսիզմի կլասիկների առանձին աշխատությունների հրատարակությունը։ Ռես-



պուբլիկայի ամեն մի բնակչին տարեկան ընկնում է 9—10 մամուլանոց միայն հայերեն հրատարակվող 11—12 անուն գիրք։

Ռեսպուբլիկայում աննախընթաց վերելք ապրեց նաև գիտական միտքը։ Անցած տարիներին ռեսպուբլիկայի գիտնականները կարևոր ավանդ մուծեցին սովետական առաջավոր գիտության մեջ։ Առանձնապես խոշոր նշանակություն ունեցան աշխարհահռչակ գիտնական Վ. Համբարձումյանի, ակադեմիկոսներ Ալիխանով եղբայրների և ուրիշների նոր հայտնագործությունները։

Ռեսպուբլիկայի գիտական մտքի կենտրոնը՝ ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիան, իր գոյության ավելի քան տասը տարիների ընթացքում մշակել է տեղական, միութենական և համաշխարհային նշանակություն ունեցող մի շարք կարևոր պրոբլեմներ և լուծել է ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող բազմաթիվ հարցեր։

Ակադեմիան ունի 30-ից ավելի գիտա-հետազոտական հաստատություններ և ավելի քան 600 գիտական և գիտա-տեխնիկական աշխատողներ։ 1940 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի գիտնականների թիվն աճել է ավելի քան 2,2 անգամ։



Սովետական բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակները արդյունք են Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ճիշտ քաղաքականության, պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վերածնված հայ ժողովուրդը ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հետ միասին կառուցեց սոցիալիզմ և այժմ էլ նույն մեծ ու հզոր ընտանիքում հաստատ քայլերով ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԻՆՉՊԵՍ ՀԱՍԱՆՔ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ

Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի Միկոյանի անվան կոլտնտեսության նախագահ Ս. ՍԱՐԳՍՅԱՆԻ պատմածը

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վերջին տարիների պատմական որոշումները նշեցին բոլոր կուլտուրաների գծով բարձր բերքատվության հասնելու հիմնական ուղիները։ Թևավորված այդ որոշումներով, մեր կոլտնտեսության աշխատողները լարեցին իրենց բոլոր ուժերը 1954 թվականը բամբակի բարձր բերքի տարի դարձնելու համար։ Այդ նպատակին հասնելու առաջին հիմքերը մենք դրեցինք 1953 թվականից։

Բամբակի ցանքի համար առանձնացված 150 հեկտար հողային տարածության յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տվեցինք 500

կիլոգրամ սուպերֆոսֆատ, ապա սկսեցինք ցրտահերկը։ Դրանով մենք նախօրոք հողը ապահովեցինք բույսի աճման համար անհրաժեշտ սննդանյութերով։ Եկան դեկտեմբեր ու հունվար ամիսները։ Այդ ժամանակամիջոցում վերադասավորեցինք աշխատող ձեռքերը՝ միավորելով նրանց երեք բրիգադաներում։ Յուրաքանչյուր բրիգադայի ամրացրինք 50 հեկտար հողամաս, ինչպես նաև անհրաժեշտ արտադրական միջոցներ։ Վերակոմպլեկտավորեցինք նաև օղակները։ Ձյունը հալվելուն պես, օղակներին հանձնարարվեց ամենակարճ ժամկետում իրենց ամրացված հողակտորները մաքրել մոլախոտերից ու ավելորդ ցողուններից, որից հետո կոլտնտեսության ագրոնոմ Ա. Ավետիսյանի առաջարկով ամբողջ տարածության վրա կատարվեց չիզելացում և հարթեցում։ Այդ արդեն 1954 թվականի մարտի վերջերին էր։ Ապրիլին, 40 հեկտարի հասնող թույլ հողերը պարարտացրինք տեղական պարարտանյութերով, իսկ դրանից հետո խոշոր ուշադրություն դարձվեց բամբակի սերմի նախապատրաստման վրա։ Ցանքից առաջ, զանազան հիվանդությունների դեմ պայքարելու նպատակով, սկզբում այն ախտահանեցինք ֆորմալինով, իսկ հետո սերմի ծլունակությանը նպաստող



ամոնիում սուլֆատով, որը միաժամանակ հանդիսանում է նաև պարարտանյութ։ Ախտահանումից հետո սկսեցինք ցանքը, որը կատարվում էր ագրոկանոնների լրիվ պահպանմամբ։ Պլանով նախատեսված 10-օրյա ժամկետի փոխարեն, մենք այդ աշխատանքը ավարտեցինք 7 օրում (ապրիլի 17—23-ը)։

Ցանքին զուգընթաց կատարում էինք ցելաջուր։ Ցելաջրից հետո սկսեցինք բամբակենու առաջին մշակությունը, որը նույնպես ավարտեցինք խիստ սեղմ ժամկետում։ Սակայն մենք չհանգստացանք նախնական այդ հաջողություններով։ Բամբակի դաշտերի լիարժեքությունը ստուգելիս պարզվեց, որ տեղ-տեղ սերմերը չծլելու հետևանքով, մնացել են բաց տարածություններ։ Առանց ժամանակ կորցնելու, այդ բաց տեղերը անմիջապես լրացրինք նախօրոք ախտահանած ու յարովիզացված սերմերով։

Երբ բամբակենին արդեն բավականին բարձրացել էր, սկսեցինք համատարած նոսրացումը։ Երկրորդ նոսրացման ժամանակ բարձր բերրիության հողերում բույսը բույսից թողեցինք 15 սմ. հեռավորության վրա, իսկ միջին բերրիության հողերում՝ 12 սանտիմետրի վրա։ Այդ հանգամանքի շնորհիվ բամբակի պլանտացիաները դարձան լիար-

ժեք։ Այս տարի յուրաքանչյուր հեկտարի վրա կար 90—100 հազար բամբակի բույս։

Բամբակենու նկատմամբ կուլտտեխնիկականների տածած հոգատար վերաբերմունքի մասին են խոսում հետևյալ փաստերը։ 150 հեկտարի վրա միայն գյուղատնտեսական այս տարում կատարել ենք քաղհան՝ 6 անգամ, կուլտիվացիա և ակոսահանում՝ 4 անգամ, ջուր՝ 7—9 անգամ, սնուցում՝ 3 անգամ։ Առաջին սնուցումը մենք կատարեցինք բամբակենու կոկոնակալման շրջանում, հեկտարին տալով 150 կիլոգրամ սուպերֆոսֆատ և 100 կիլոգրամ ամոնիակային սելիտրա, երկրորդ սնուցումը՝ ծաղկի երևալու պահին, հեկտարին տալով 150 կիլոգրամ սուպերֆոսֆատ և 200 կիլոգրամ ամոնիակային սելիտրա, երրորդը՝ համատարած ծաղկաշրջանում, հեկտարի վրա շաղ տալով միայն 150 կիլոգրամ ամոնիակային սելիտրա։ Հողին տրվող պարարտանյութերի այդպիսի քանակը միանգամայն համապատասխանում է պետական պլանով հեկտարից նախատեսվող 20—22 ցենտներ բամբակի հումք ստանալուն։

Բամբակի բարձր բերքն ապահովող վերոհիշյալ բոլոր միջոցառումների գործադրումից հետո, մենք սկսեցինք նախապատրաստվել բերքահավաքին։ Ամենից առաջ, ըստ բրի-



գադների, կազմեցինք բամբակի բերքահավաքի սեպտեմբեր և հոկտեմբեր ամիսների գրաֆիկ-պլան։ Ձեռք բերեցինք լրացուցիչ կշեռքներ ու կշռաքարեր, բարդաններ ու գոգնոցներ։ Վերանորոգման ենթարկվեց յուրաքանչյուր բրիգադայի բամբակապահեստը։ Ամեն մի բրիգադայի տրամադրեցինք մեկական ավտոմեքենա և երկուական ֆուրգոն։ Այդ բոլորից հետո, բամբակի առաջին կրնգուղները բացվելուն պես, մենք կազմ ու պատրաստ սկսեցինք բերքահավաքը։ Շնորհիվ մեր լավ աշխատանքի, հենց առաջին օրից սկսած՝ բամբակի հանձնման օրվա պլանը գերակատարեցինք 4—5 տոննայով, որը հավասար էր տարեկան պլանի կատարման 3 տոկոսին։ Պլանների գերակատարմանը նպաստում էին մի շարք հանգամանքներ, որոնց վրա ես հարկ եմ համարում համառոտակի կանգ առնել։ Դրանցից ամենից գլխավորը երեք գոգնոցով միաժամանակ աշխատելն էր։ Այսինքն, մեկական գոգնոցի փոխարեն, գրեթե բոլոր աշխատողները չանաքի ժամանակ վերցնում էին երեքական գոգնոց։ Յուրաքանչյուրը լցվելուց հետո, թողնվում էր տեղում և միայն վերջին գոգնոցը բամբակով լցվելիս՝ աշխատողը խնայելով ժամանակն ու անցնելիք տարածու-

թյունը, երբեք միանգամից տեղափոխում էր բարդանի մոտ։ Վերադառնալով, նա կրկին աշխատանքը շարունակում է նույն սիստեմով։ Երկրորդ հանգամանքը, դա զույգ ձեռքերով չանաքելն էր, որը կոլտնտեսությունում մասսայական բնույթ է կրում։ Եվ երրորդը՝ այդ աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործումն էր։ Բոլոր չանաքավորները աշխատանքի էին դուրս գալիս վաղ առավոտյան և վերադառնում ուշ երեկոյան։ Ահա այս հանգամանքներն էին, որ նպաստեցին սեպտեմբեր ամսվա պլանի կատարողականը 60 տոկոսից հասցնելու 70 տոկոսի։ Հոկտեմբերի տասնչորսին մենք արդեն կատարեցինք պետության հանդեպ մեր պարտավորությունը՝ մթերակայան հանձնելով 3345 ցենտներ առաջին տեսակի բամբակ։ Այժմ մենք բամբակ ենք հանձնում պլանից դուրս։ Բավական է ասել, որ հոկտեմբերի 11-ից մինչև 25-ը մեր պլանի կատարողականը հասել է 113 տոկոսի։ Պետությանը պլանից ավել 433 ցենտներ բամբակ ենք հանձնել։

Այժմ, երբ դեռ շարունակվում է բամբահավաքը, կոլտնտեսությունը ձեռնամուխ է եղել եկող տարվա գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստմանը։ Արդեն կոլտնտեսության պահեստ է տեղափոխ-



ված 100 տոննա սուպերֆոսֆատ, որով պարարտացվելու են բամբակի համար առանձնացված ցրտահերկ հողամասերը։ Բամբակագործական երեք բրիգադաներն էլ իրենց հերթին նախապատրաստվում են բերքահավաքից անմիջապես հետո մաքրել ցրտահերկի տակ դրվող դաշտերը։

Բարձր բերքի համար մղված մեր երկարատև ու անխոնջ աշխատանքն իզուր չանցավ։ Բարձր գնահատելով ձեռք բերված հաջողությունները, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը վերջերս մեր կոլտնտեսությանը նվիրեց մեկ բեռնատար ավտոմեքենա, իսկ կոլտնտեսության ղեկավար ու շարքային աշխատողներին՝ թվով 50 հոգու դրամական պարգև տվեց։

Ոգևորված այդ հաջողություններով, մենք այժմվանից լարում ենք մեր բոլոր ուժերը 1955 թվականը բամբակի ավելի բարձր բերքի տարի դարձնելու համար։

---

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՖԱԲՐԻԿԱՅՈՒՄ

Ն. ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ
Երևանի դպրոցական պիտույքների ֆաբրիկայի ագիտատոր

*Մեր ֆաբրիկայի պարտկազմակերպությունը աշխատանքի ուսանելի փորձ ունի ցուցադրական ագիտացիայի միջոցով պարտիայի և կառավարության որոշումները մասսայականացնելու, արտադրության առաջավորներին խրախուսելու, նրանց աշխատանքի փորձը տարածելու գործում։*

*Ֆաբրիկայի աչքի ընկնող տեղերում փակցված են պատվո-տախտակներ, լոզունգներ, պլակատներ, կոչեր, մրցության արդյունքներն ամփոփող տախտակներ և այլն։*

*Այս բոլորը տարբեր ձևերով ցույց են տալիս, թե ինչ խնդիրներ են դրված գործարանի առջև և ինչպես են դրանք կատարվում։ Առաջինը, որ ֆաբրիկայում աչքի է ընկնում, դա պատվո-տախտակն է, որտեղ փակցված*



*են ֆաբրիկայի 27 առաջավորների լուսանկարները։ Պատվո-տախտակի շուրջը փակցված են գեղարվեստորեն ձևավորված լոզունգներ, ինչպես, օրինակ, «Աշխատանքի արտադրողականության վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար», «Բնակչության տանք բարձրորակ արտադրանք» և այլն։*

*Դիտելով ցուցադրական ագիտացիայի նյութերը, կարելի է հեշտությամբ գաղափար կազմել գործարանի և նրա առաջավորների մասին։ Բացի այդ, ֆաբրիկայի յուրաքանչյուր ցեխում, յուրաքանչյուր բանվորի մեքենայի մոտ փակցված է օրվա պլանների կատարման ընթացքը ցույց տվող տախտակ։ Ցեխի պլանների կատարման ընթացքը ցույց տվող տախտակում նշվում է տվյալ ցեխի պլանի կատարողականը, սկսած ամսվա սկզբից, մինչև վերջը։ Ամսվա վերջին ցեխի կոլեկտիվը քննարկում է տվյալ ամսվա պլանի կատարման ընթացքը, բացահայտում է գոյություն ունեցող թերությունները, նշում է միջոցառումներ թերությունները վերացնելու և ետ մնացողներին առաջավորներին հասցնելու համար։*

Ցեխերում յուրաքանչյուր բանվորի պլանի կատարման վերաբերյալ կա հատուկ տախտակ, որը ցույց է տալիս, թե նա ինչպես է կատարում տվյալ ամսին ստանձնած պարտավորությունները։ Այսպես, ցուցադրական այդ տախտակից իմանում ենք, որ տեռրակի ցեխի բանվորուհի Հ. Բաղդասարյանը անցյալ ամսվա պլանը կատարել է 180—200 տոկոսով։ Աշխատանքում գերազանց ցուցանիշներ ունի Գ. Քանքանյանը։ Նա ֆաբրիկայի ամենաառաջավոր նորարարն է։ Բազմաթիվ են նրա մտցրած ռացիոնալիզատորական առաջարկությունները։ Այժմ ֆաբրիկայում տեռրերը կարվում են Գ. Քանքանյանի հնարած մեքենայով, որը կրկնապատիկ շատ արտադրանք է տալիս։ Միայն տեռրակի թղթի գծումը մեքենայացնելու վերաբերյալ նրա վերջերս կատարած նորարարական առաջարկությունները ֆաբրիկային տարեկան տալիս են 36 հազար ռուբլու տնտեսում։ Այդ և մյուս նորարարների առաջարկությունները, որոնք ֆաբրիկային տնտեսական մեծ օգուտներ են բերել, ագիտկոլեկտիվը ցուցադրական ագիտացիայի միջոցով լայնորեն մասսայականացրել է։

Տասնյակ լոզունգներ ու պլակատներ կան



ֆաբրիկայի ցեխերում, որոնք բանվորներին կոչ են անում պլանները կատարել ժամանակին, տալ գերազանց որակի արտադրանք, ժամանակից շուտ կատարել մրցության ստանձնած պարտավորությունները, իջեցնել ինքնարժեքը, կիրառել խնայողության ռեժիմը և այլն։ Ահա այդ լոզունգներից մի քանիսը՝ «Ավելի լայնորեն արմատավորենք աշխատանքի առաջավոր մեթոդը», «Պետական պլանի կատարումը օրենք է», «Որակական ու քանակական բարձր ցուցանիշներով կատարենք օրվա առաջադրանքները» և այլն։

Պարտիական կազմակերպության ղեկավարությամբ ագիտկոլեկտիվը պայքարում է խոտան արտադրանքը իսպառ վերացնելու համար։ Այդ գործում լայնորեն օգտագործվում է ցուցադրական ագիտացիան։ Ֆաբրիկայի ամենաաչքի ընկնող տեղում փակցրված են երկու տախտակներ. մեկի ճակատին գրված է. «Տալիս են բարձրորակ արտադրանք», իսկ մյուսին՝ «Տալիս են վատորակ արտադրանք»։ Առաջին տախտակում խրախուսանքի են արժանանում բարձր որակի արտադրանք տվող բանվորներն ու բանվորուհիները, իսկ երկրորդ տախտակում

պարսավանքի են ենթարկվում խոտանաբարները։ Այնուհետև հերթական զրույցի ժամանակ ունկնդիրներին բացատրում են խոտան արտադրանք տալու պատճառները և պատմում այն միջոցառումների մասին, որ ձեռք է առնված խոտան արտադրանքը վերացնելու համար։ Ցուցադրական ագիտացիայի այդ միջոցը խրախուսում է ետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։

Ագիտկոլեկտիվը ցուցադրական ագիտացիան լավագույն ձևով օգտագործում է սոցմրցությունը ծավալելու և ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։

Յուրաքանչյուր ցեխում աչքի ընկնող տեղում փակցված են գեղարվեստորեն ձևավորված սոցմրցության պայմանագրեր և դրանց կատարման ընթացքի գրաֆիկան։ Միաժամանակ յուրաքանչյուր ցեխում կա սոցմրցության հաշվառման տախտակ, որտեղ գրանցվում են մրցության արդյունքները։ Այսպես, օրինակ, տպագրական ցեխի սոցմրցության հաշվառման տախտակը ցույց է տալիս, որ ցեխը ամսվա պլանը կատարում է 140—150 տոկոսով։ Ցեխում աշխատող բոլոր բանվորներն էլ կատարում են



ստանձնած պարտավորությունները և տալիս են գերազանց որակի արտադրանք։

Այս բոլորի հետ միասին ֆաբրիկայում կան նաև լուրջ թերություններ։ Ագիտկոլեկտիվը դեռևս ցուցադրական ագիտացիան վատ է օգտագործում աշխատանքային կարգապահությունը խախտողներին մասսայական պարսավանքի ենթարկելու համար։ Դեպքեր են լինում, երբ ոմանք ճիշտ ժամանակին չեն ներկայանում աշխատանքի կամ աշխատանքի ժամին խոսում են միմյանց հետ, ծխում արգելված տեղերում և այլն։ Ծաղրանկարների միջոցով նմաններին պետք է քննադատել ու պարսավել։

Ցուցադրական ագիտացիան հզոր միջոց է աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Այն պետք է օգտագործել ժամանակին և նպատակայալաց կերպով։

---

# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ «ՀԱՑԱՀԱՏԻԿ» ՊԱՎԻԼԻՈՆԸ

*Հացահատիկի արտադրությամբ մեր երկիրը աշխարհի ամենախոշոր երկրներից մեկն է։ ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածության աճման և հողագործության կուլտուրայի բարձրացման հետ մեկտեղ անընդհատ ավելանում է ապրանքային հացահատիկի արտադրությունը։ Եթե 1926—1927 թվականին հացահատիկի ապրանքային արտադրանքը կազմում էր 10, 3 միլիոն տոննա, ապա 1952—1953 թվականին այն հասավ 40, 4 միլիոն տոննայի։*

*Մեր երկրում հացահատիկային տնտեսության ասպարեզում ձեռք բերված նվաճումների, առաջավոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների, գիտա-հետազոտական ինստիտուտների և փորձակայանների հաջողությունների մասին է վառ կերպով խոսում Համամիութենական գյուղատնտե-*



*սական ցուցահանդեսի «Հացահատիկ» պավիլիոնը։*

*Պավիլիոնի նախադահլիճում պատմվում է այն հսկայական ռեզերվների մասին, որ ունի Սովետական Միությունը գյուղատնտեսական ամբողջ արտադրության հիմքը կազմող հացահատիկային տնտեսության հետագա ընդարձակման գործում։ Երկրի միայն արևելյան շրջաններում խամ ու խոպան հողերի տարածությունը հասնում է տասնյակ միլիոն հեկտարների։ Արդեն այս տարի խամ հողերում ստեղծվել է 124 հացահատիկային սովխոզ, որոնք զինված են գյուղատնտեսական առաջնակարգ տեխնիկայով։ Մյուս սովխոզների հետ միասին, այդ սովխոզները մոտակա երկու—երեք տարում պետությանը կհանձնեն տարեկան առնվազն կես միլիարդ փութ հացահատիկ։*

*Նոր հողերի յուրացման հաշվին հացահատիկային կուլտուրաների և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների ցանքատարածությունը 1955 թվականին կհասցվի առնվազն 15 միլիոն հեկտարի, իսկ 1956 թվականին՝ 28—30 միլիոն հեկտարի։*

*Կոմունիստական պարտիայի կոչով նոր հողերի յուրացման շրջանների ՄՏ կայաններն ու սովխոզներն են ժամանել ավելի*

քան 150 հազար որակյալ բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ, ագրոնոմներ և գյուղատնտեսության այլ մասնագետներ։

Պավիլիոնի երկրորդ և երրորդ դահլիճներում ցուցադրված է առաջավոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների փորձը, որոնք ցորենի բարձր բերք են ստացել տարբեր բնական-կլիմայական և հողային գոտիներում։

Այցելուների մեջ հատուկ հետաքրքրություն է առաջ բերում Կուրգանի մարզի Շադրինսկի շրջանի կոլտնտեսությունների փորձը, որոնք անցյալ տարի գարնանացան ցորենի 22 հազար 573 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են 15,1 ցենտներ բերք։ Այդ առաջավոր շրջանի կոլտնտեսությունները իրենց դաշտերում լայնորեն կիրառում են հողի մշակման և գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի այն նոր եղանակները, որ մշակել է կոլտնտեսային գիտնական, Ստալինյան մրցանակի լաուրեատ, «Լենինի պատգամները» կոլտնտեսության դաշտավար Տերենտի Սեմյոնովիչ Մալցևը։

Տեղական պայմաններից ելնելով՝ հողի մշակման նոր սիստեմի արմատավորման փորձեր են դրվում նաև մյուս մարզերում,



երկրամասերում և ռեսպուբլիկաներում։ Գորկու մարզի Սլոբոդսկի ՄՏ կայանի գործունեության գոտու կոլտնտեսությունները, օրինակ, ավելի քան հազար հեկտար հող մշակելու են այդ նոր սիստեմով։

Պավիլիոնի չորրորդ՝ «Սելեկցիա և սերմնաբուծություն» դահլիճում լայնորեն ցուցադրված են գիտա-հետազոտական հիմնարկների և փորձակայանների հաջողությունները։ Այցելուներն այստեղ տեսնում են գիտնականների, ականավոր սելեկցիոներների պորտրետներ։ Այդ թվում՝ Ա. Շեխուրդինի պորտրեն, որը ստեղծել է գարնանացան ցորենի բարձր բերքատու մի քանի սորտեր, որոնցով կատարված ցանքերը 1953 թվականին կազմում էին ավելի քան 10 միլիոն հեկտար, Ն. Ցիցինի պորտրեն, որն ստեղծել է բարձր բերքատու ցորենի հիբրիդներ՝ 599, 186 և 1, որոնք լայն տարածում են գտել սեվահողային գոտու շրջաններում, Վ. Յուրեի պորտրեն, որը մեր գյուղատնտեսությանը տվել է հացահատիկային կուլտուրաների 15 նոր սորտեր, որոնցից ինը շրջանացված է։

Պավիլիոնի հինգերորդ և վեցերորդ դահլիճներում լավագույն տնտեսությունների օրինակներով ցույց են տրված տարեկանի,

գարու, վարսակի, ճավարատու և լոբազգի կուլտուրաների մշակման գործում ձեռք բերված նվաճումները, մեթոդներն ու եղանակները։

Սովետական իշխանության տարիներին ցորենի մշակությունը ընդգրկել է նոր շրջաններ։ Հյուսիսի, հյուսիս-արևմուտքի և արևմուտքի շրջաններում հացահատիկային կուլտուրաների ընդհանուր ցանքատարածության մեջ ցորենի ցանքերի տեսակարար կշիռը 1913 թվականին կազմում էր 1,5 տոկոս, իսկ 1952 թվականին՝ 18,2 տոկոս, ոչ սևահողային գոտու կենտրոնական մարզերում համապատասխանորեն՝ 1,8 և 16,2 տոկոս։

Ղազախական ՍՍՌ Կոկչետավի մարզի Ռուզաևի շրջանի «Լուսավոր ուղի» կոլտնտեսությունը 1952—1953 թվականին յուրացրեց 1842 հեկտար խամ ու խոպան հող և 1953 թվականին գարնանացան ցորենի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 29 ցենտներ բերք։

Օդեսայի մարզի Բերյոզովկի շրջանի կոլտնտեսություններում 1952—1953 թվականին աշնանացան ցորենի բերքատվությունը կազմեց միջին հաշվով հեկտարից 19 ցենտներ։ Շևչենկոյի ՄՏ կայանի սպասարկման



գոտում այդ կուլտուրայի բերքատվությունը կազմեց հեկտարից 20,5 ցենտներ, իսկ Ստալինի անվան կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 24,5 ցենտներ բերք՝ 1516 հեկտար տարածության վրա։

1953 թվականին գյուղատնտեսության կարիքների բավարարման համար 3,8 անգամ շատ մեքենաներ ու սարքավորումներ են արտադրվել, քան 1940 թվականին։ 1946—1953 թվականների ընթացքում արդյունաբերությունը յուրացրեց 220 նոր տիպի գյուղատնտեսական մեքենաների արտադրությունը։

1954 թվականի սկզբներին գյուղատնտեսության մեջ կենտրոնացվել էր մեկ միլիոն 260 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած)։

Տարեցտարի ավելանում է հացահատիկային կոմբայնների քանակը։ 1946 թվականին կար 147 հազար 700 կոմբայն, 1951 թվականին՝ 21 հազար 200, իսկ 1953 թվականին՝ 292 հազար կոմբայն։

Հացահատիկային տնտեսության մեջ ավարտվում է հիմնական դաշտային աշխատանքների մեքենայացումը։ 1953 թվականին տրակտորներով կատարված ցելն ու ցրտահերկը կազմեց 98 տոկոս, ցանքը՝ 91 տոկոս, և կոմբայնային բերքահավաքը՝ 77 տոկոս։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄՆ ՈՒ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

*Սպառազինությունների մրցավազքը, ուղղակի և անուղղակի հարկերի ավելացումը, սննդի և լայն ըսպառման ապրանքների գների անընդհատ բարձրացումը, մասսայական գործազրկությունը ծայրահեղ աղքատություն և թշվառություն են հասցրել կապիտալիստական երկրների աշխատավորներին։*

✪ *ԱՄՆ-ում ռազմական ծախսերը 15 տարվա ընթացքում ավելացել են մոտ 60 անգամ, 1938 թվականի 1 միլիարդ դոլարից 1953 թվականին հասնելով 58,2 միլիարդ դոլարի։ ԱՄՆ-ի պետական ապարատի պահպանման համար 1929 թվականին ծախսված 4,6 միլիարդ դոլարի փոխարեն 1952 թվականին ծախսվել է 22,2 միլիարդ դոլար։*

✪ *Անգլիայում ռազմական ծախսերը 1937 թվականի 197 միլիոն ֆունտ ստերլինգից 1953 թվականին հասան 1 միլիարդ 634 միլիոն ֆունտ ստերլինգի։ Ռազմական ծախսերը մեծ չափերի են հասնում Ֆրանսիայում և Իտալիայում։*



✪ *ԱՄՆ-ում այս տարի ռազմական նպատակների համար հատկացված է պետական բյուջեի 66 տոկոսը, իսկ սոցիալական ապահովությանը, առողջապահությանը, ժողովրդական կրթությանը և բնակարանային շինարարությանը՝ միայն 4 տոկոսը։*

✪ *ԱՄՆ-ում քաղաքացիական նպատակներին հատկացվող միջոցները 1954 թվականին կրճատվել են՝ առողջապահության և կենցաղային կարիքների գումարից 860 միլիոն դոլար կամ 22,6 տոկոսով, բնակարանային և կոմունալ շինարարության գումարներից 454 միլիոն կամ 20 տոկոսով, ժողովրդական կրթության գումարներից 20 տոկոսով, այն դեպքում, երբ զորանոցների և ճամբարների կառուցման համար ամեն տարի ծախսվում է 4,5 միլիարդ դոլար։*

✪ *1938 թվականին բնակչությունից գանձվող ուղղակի հարկերը ԱՄՆ-ում կազմում էին 2,8 միլիարդ դոլար, իսկ 1953 թվականին կազմեցին 35 միլիարդ դոլար, աճելով համարյա 12 անգամ։ Բնակչությունից գանձվող ուղղակի հարկերը ավելացել են՝ Անգլիայում 2 անգամ, Ֆրանսիայում՝ 2,6 անգամ, Իտալիայում՝ 1,5 անգամ։ 1950 թվականին Արևմտյան Գերմանիայում 1 շնչից գանձվող հարկը եղել է 82,8 մարկ, իսկ 1954 թվականին այն կազմում է 259,43 մարկ, որն աճել է ավելի քան 3 անգամ։ 1954 թվականին Արևմտյան Գերմանիայի օկուպացիոն ծախսերը կազմում են պետական բյուջեի 35 տոկոսը։*

✪ Կապիտալիստական երկրներում տարեցտարի ավելանում է հարկատուների թիվը։ 1938 թվականին ԱՄՆ-ում հարկատուների թիվը եղել է 3 միլիոն մարդ, իսկ 1951 թվականին՝ 44,3 միլիոն մարդ։ Անգլիայում հարկատուների թիվը այդ նույն ժամանակամիջոցում աճել է 4 անգամ, 4,7 միլիոն մարդուց հասել է 15 միլիոն մարդու։ Հարկերը հիմնականում գանձվում են բնակչության այն մասից, որը ավելի քիչ եկամուտ է ունենում։

✪ Կապիտալիստական երկրներում մեծ գումարներ են կազմում բնակչությունից գանձվող անուղղակի հարկերը։ Իտալիայում բնակչությունից գանձվող անուղղակի հարկերը կազմում են ընդհանուր հարկերի 84 տոկոսը, Ֆրանսիայում՝ 64 տոկոսը, Արևմտյան Գերմանիայում՝ 60 տոկոսը և այլն։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում հարկերը կազմում են ազգային եկամտի 34,3 տոկոսը, Անգլիայում՝ 48 տոկոսը։

✪ Ռազմական մրցավազքը տարեցտարի ավելացնում է մանր ֆերմերների կողմից վճարվող հարկերի գումարը։ 1952 թվականին ֆերմերների կողմից վճարվող ֆեդերալ եկամտահարկն ավելացել էր 15 անգամ։ 1945—1950 թվականների ընթացքում ԱՄՆ-ում քայքայվել են 713 հազար ֆերմերներ։

✪ Ֆրանսիայում և Իտալիայում բանվորների ռեալ աշխատավարձը կազմում է նախապատերազմյան մակարդակի կեսից էլ պակաս։ Անգլիայում բան-



վորները նախապատերազմյան մակարդակից 20 տոկոսով ցածր աշխատավարձ են ստանում։ 1939 թվականի համեմատությամբ 1952 թվականին ապրուստը ԱՄՆ-ում թանկացել է 3 անգամ։ 1939 թվականից մինչև 1952 թվականը հացի գինը բարձրացել է ավելի քան 2 անգամ, մսինը՝ 2,9 անգամ, կարագինը՝ 2,6 անգամ, շաքարինը՝ 2 անգամ, կարտոֆիլինը՝ 3 անգամ։ Գների բարձրացումը խիստ կերպով կրճատել է բնակչության գնողունակությունը։ 1946—1950 թվականներին ԱՄՆ-ում 37 տոկոսով, Անգլիայում 54 տոկոսով քիչ կարագ է գործածվել, քան համաշխարհային երկրորդ պատերազմի նախօրյակին։

✪ ԱՄՆ-ում բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը 1952 թվականին կազմել է ապրուստի մինիմում պահանջների 72 տոկոսը, Իտալիայում՝ 50 տոկոսը, Յապոնիայում՝ 30 տոկոսը, Արևմտյան Գերմանիայում՝ 63 տոկոսը։ ԱՄՆ-ի բոլոր ընտանիքների 70 տոկոսը ավելի քիչ եկամուտ է ստանում, քան պահանջվում է ապրելու մինիմում պահանջները բավարարելու համար։

✪ Կապիտալիստական երկրներում գնալով ավելի է խորանում տնտեսական ճգնաժամը։ Պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրանքը 1953 թվականի հուլիսից մինչև 1954 թվականի հուլիս ամիսը կրճատվել է 10 տոկոսով։ Մեկ տարում գործազուրկների թիվը ավելացել է 2 միլիոն

*մարդով։ Ամերիկայի պրոֆմիությունների հաշվարկումներով, այժմ երկրում լրիվ և մասնակի գործազուրկների թիվը կազմում է ավելի քան 16,4 միլիոն մարդ։*

✪ *Վերջին հինգ տարիների ընթացքում գործազրկությունը ԱՄՆ-ում աճել է 75 տոկոսով, Արևմտյան Գերմանիայում՝ 245 տոկոսով, Ֆրանսիայում՝ 155 տոկոսով, Հոլանդիայում՝ 276 տոկոսով, Ճապոնիայում՝ 98 տոկոսով և այլն։ Հունաստանի արդյունաբերական բանվորների կես մասը անգործ է։ Թյուրքիայում հազարավոր անգործներ ապրում են անտանելի ծանր պայմաններում և շատ ընտանիքների սնունդը հանդիսանում է խաշած բանջարը։*

✪ *Ավելի քան ծանր է գյուղացիության վիճակը կապիտալիստական երկրներում։ Միայն 1953 թվականին ամերիկյան ֆերմերների եկամուտները կրճատվել են 2 միլիարդ դոլարով կամ 14 տոկոսով։ ԱՄՆ-ի հողագործության մինիստրության տվյալներով նույն թվականի 8 ամիսների եկամուտները անցյալ տարվա համեմատությամբ նորից կրճատվել են 4 տոկոսով։ Այս տարվա սկզբին ֆերմերների պարտքերը կապիտալիստական ընկերությունների բանկերին հասնում է համարյա 17 միլիարդ դոլարի։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի՞նչ է Սովետական իշխանությունը: *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կեցցե՛ Սովետական Հայաստանը: *Երկեր, հատոր 4, էջ 458—459, Հայպետհրատ, 1948։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— *Հաշվետու* զեկուցում Պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1953։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— *Ճառ* Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում: *Հայպետհրատ, 1954։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— *Հաշվետու* զեկուցում Հայաստանի Կոմպարտիայի 17-րդ համագումարին ՀԿՊ Կենտկոմի աշխատանքի մասին: Հայպետհրատ, 1954:

## 2. ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում Պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72, Հայպետհրատ, 1953։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *էջ 5—28, Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ., սեպտեմբերի 3-ին։*

Ավելի մեծ հոգատարություն եկող տարվա բերքի նկատմամբ, *«Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հոկտեմբերի 17-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հոկտեմբերի 24-ի համարում։*



## 3. ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԿՈՒՇՏ ԵՎ ՏԱՔ ՁՄԵՌՈՒՄԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, էջ 20—33, Հայպետհրատ, 1953։*

Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին։ *Հայպետհրատ, 1953։*

Ապահովել հանրային հոտի տաք և կուշտ ձմեռումը։ *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված հոկտեմբերի 19-ի համարում։*

## 4. 1954 ԹՎԱԿԱՆԸ ՓԱԿԵՆՔ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 43—56, Հայպետհրատ, 1953։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիա-

ցիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի նոյեմբերի 24-ի համարում։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կոմպարտիայի 17-րդ համագումարին ՀԿՊ Կենտկոմի աշխատանքի մասին, *էջ 13—32։*

Արդյունաբերության նոր վերելքի համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված 1954 թվականի հոկտեմբերի 27-ի համարում։*

### 5. ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԼԾԱԿՆ Է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն։ *Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Նոր իրադրություն-տնտեսական շինարարության նոր խնդիրներ։ Լենինիզմի հարցերը, *էջ 422—425, Հայպետհրատ, 1940։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 75—83, Հայպետհրատ, 1953։*

Աշխատանքի բարձր արտադրողականության համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված № 226-ում, 1954։*



### 6. ԿՐՈՆԱԿԱՆ ՍՆԱՀԱՎԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐԻ ՎՆԱՍԱԿԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալիզմը և կրոնը։ *Երկեր, հատոր 10, էջ 92—98, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մարտնչող մատերիալիզմի մասին։ *Երկեր, հատոր 33, էջ 267—279, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Զրույց ամերիկյան առաջին բանվորական դելեգացիայի հետ, *Երկեր, հատոր 10, էջ 150—153, Հայպետհրատ, 1949։*

ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը բնակչության մեջ գիտա-աթեիստական պրոպագանդա մղելու գործում թույլ տված սխալների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի նոյեմբերի 12-ի համարում։*

ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ.— Երկրի վրա կյանքի ծագման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հոկտեմբերի 13-ի համարում։*

---

Պտ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
**1955 թվականի**
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիսը — 12 ռ.**
**6 ամիսը — 6 ռ.**
**Մեկ համարը — 50 կոպեկ**
**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 21** **1954 г.**

*ՎՖ 13982* *Պատվեր 916* *Տիրաժ 7900*

*Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*